դէ Կրեմլինի պատասխանը, որովհետեւ Ջուին կը սպասէ խորհրդային ղեկավարներու հրահանգին: Ցամենայն դէպս, Ջուին այնքան ալ գոհ չէր Արեւմտեաններու առաջարկէն :

### ԽՐՈՒՇՉԵՒ ԿԸ ԽՕՍԻ

Ամերիկացի ընկերական մը, որ առենին առաջին ամերիկացին էր որ տեսակցութիւն ունեցած էր Սթալինի հետ, ներկայիս ալ կարգ մը հետաքրքրական հարցումներ տուած է Խրուշչեւի, որ յայտնած է.— «Բոլորս ալ պէտք է ապրինք նոյն մոլորակին վրայ: Սակայն, ասոր համար պէտք է հեռացնել հիւլէական վտանգը: Խ. Միութիւնը պատրաստ է արգիլելու ջրածնային եւ հիւլէական ռումբերը: Ամերիկա այս ուղղութեամբ նախ փաստ կ'ուզէ, յետոյ՝ վստահութիւն, ինչ որ անկարելի է»:

Խօսելով խորհրդային քաղաքացիներու արտասահման այցելութեան մասին, Խրուշչեւ կը ճշդէ, թէ անոնք ազատ չեն դուրս ելլելու, «բայց երբ քիչ մը աւելի հարստանանք, այդ ալ կարելի պիտի ըլլայ: Իսկ անոնք որ ուզեն արտասահման մնալ՝ թող մնան»: Գալով ռուս Հրեաներուն, որոնց պարագաներու մէջ Խրուշչեւ թոյլ կուտայ անոնց՝ որ դուրս ելլեն, իսկ երբեմն՝ ո՛չ:

Հարց տրուած է վերջին մաքրագործումներու մասին .— «Ժամանակները փոխուած են: Դրամատիրական երկիրներուն հետ՝ մեր յարաբերութիւնները բոլորովին տարբեր են այսօր: Այս փոփոխութիւնը էական էր մեր քաղաքականութեան համար եւ այդ մարդիկը կ'ընդդիմանային մեզի: Սակայն զանոնք պիտի չարտաքսենք կուսակցութենէն » :

× Մոսկուայէն հասած լուրի մը համաձայն, Նախագահական Խորհուրդէն (Պրեզիդիում) արտաքսուելէն ի վեր, Մոլոթով կը գտնուի իր սենեակին մէջ եւ կը տառապի ջղային տագնապէ: Երկու ոստիկաններ կը հսկեն իր դրան առջեւ :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ համայնավար կուսակցութեան կեդր. կոմիտէն ինը հոգի արտաքսեց իր շարքերէն:

ՄՈՍԿՈՒԱՅԻ երիտասարդական փառատօնին ընթացքին կռիւ մը պատահած է Ֆրանսացիներու եւ ազգայնական Ալժերիացիներու միջեւ :

ԻՏԱԼԻԱ եւ Սպանիա միաժաման ճանչցան Թունուզի Հանրապետութիւնը :

ՖՐԱՆՍԱՅԻ մասնագէտներ, յատկապէս՝ ճարտարագէտներ պիտի երթան Փաքիստան, օգնելու համար զանազան շինութեանց :

ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐ վեցուկէս միլիոն տոլարի օգնութիւն մը ըրին Յորդանանի :

ՀՈՒՆԳԱՐԻՈՅ վարչապետ Քատար Մոսկուա գացած է, յայտնեց Փեշտայի ձայնասփիւռը: Իրեն կ'ընկերակցին քաղաքական այլ դէմքեր՝ արձակուրդը Խ. Միութեան մէջ անցնելու համար ...:

Խ. ՄԻՈՒԹԵԱՆ մէջ գտնուող լեհ տարագիրներէն 48.000 հոգի վերադարձած է Լեհաստան: Միւս կողմէ, 94.000 հոգի հեռացած է Լեհաստանէն՝ Իսրայէլ եւ Գերմանիա հաստատուելու համար :

ՃԱՓՈՆԻ ողողումներուն հետեւանքով աւելի քան հազար հոգի խեղդամահ եղած է :

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԿԱՅԱՆ

Բ. ԽՈՒՄԲԻ մեկնումը այս երկուշաբթի իրիկուն: Հաւաքուիլ Կար տը Լիոնի մեծ ժամացոյցին տակը ժամը 21.30ին :

Ա. ԽՈՒՄԲԻ վերադարձ, այս երկուշաբթի առաւօտ ժամը 7ին: Կը խնդրուի ծնողներէն Կար տը Լիոնէն դիմաւորել :

×

Կապոյտ Խաչի օդափոխութեան կայանի, Բ. խումբին արձանագրուած եւ մասկազմող Լիոնի եւ Տէսինի տղոց ծնողներէն, կը խնդրուի որ իրենց զաւակները՝ պակաժներով եւ թուղթերով միասին, բերեն այս երկուշաբթի, առաւօտեան ժամը ճիշդ վեցին, Լիոն - Փէրաշի կայարանին ժամացոյցին տակ :

### ՕԳՈՍՏՈՍ 18ԻՆ

Պիտի ձայնասփռուի Փալէ տը Շայոյի եկեղեցական երաժշտութեան համերգը, որուն մասնակցած է հայկ. երգչախումբը, ղեկավարութեամբ Կարպիս Աճէմեանի, Կիրակի առտու ժամը 8.45ին Փարի - էնթէրէն :

## ՊԱՏԱՐԱԳ

### Ս. ՅՈՎՀ. ՄԿՐՏԻՉ ԵԿԵՂԵՑԻՆ

### ՓԱՐԻ ԷՆԹԷՐԻ ՎՐԱՅ

Այս կիրակի առաւօտ ժամը 8.45ին հայրապետական պատուիրակ՝ Սերովբէ Եպիսկ. Մանուկեան պիտի պատարագէ եւ քարոզէ Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին :

Նոյն ժամուն պատարագը պիտի ձայնասփռուի Փարի էնթէրէն:

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Թեհրանէն Տիկին Վիքթորիա Բարթողիմիոսեան կը փնտռէ իր զարմիկը՝ Մարտիրոս Խաչատուրեան, 38 տարեկան, անոր օգնելու համար: Գրել՝

Mme Partoghimiossian
Ave. Arad Djemchid
Koutché Yakchal 23
Tehran (Iran)

### ԾԱԽՈՒ Է

Լա Պոքայի մէջ (Քան) Րուլթ Նասիոնալի վրայ դերձակի խանութ մը, Ֆոն տը Քոմէրսը, (եռեւը խոհանոցով) : Ամէն կարգի առեւտուրի յարմար, խանութին վրայ չորս սենեակներով յարկաբաժին մը: Դիմել Տայլերեանի՝

86 Ave. Francis Tonner
La Bocca (A. M.)



Imp. ARAXES, 46, Rue Richer Paris-9e

### ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Ողբացեալ Բարսեղ Նշանեանի գառնագէտ մահուան առթիւ Ալֆորվիլէն Տէր եւ Տիկին Թէնէքէճեան փոխան ծաղկեպսակի կը նուիրեն հազար ֆր. Մշակոյթի տան Ֆոնտին :

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

«Յառաջ»ի վարչութիւնը պարտք կը սեպէ անգամ մըն ալ յիշեցնել իր բաժանորդներուն որ փակեն իրենց առկախ հաշիւները :

Որեւէ օտար թերթ կարելի չէ ապառիկ կարդալ եւ փափաքելի է որ նոյնը ըլլայ մանաւանդ հայերէն թերթի համար, որուն [illegible] աւելի սահմանափակ են :

[illegible] արձակուրդի գացող մեր բաժանորդներէն կը խնդրուի անպայման ղրկել իրենց նոր հասցէին հետ նաեւ հինը: Ծախքերու համար՝ 100 ֆրանք :

### ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

«Յառաջ»ի չէք - փոսթալի թիւն է՝ 15069 - 82, կը խնդրուի չգործածել նախորդը որ ջնջուած է :

Կը յիշեցնենք նաեւ որ այս թիւը ՎԵՐԱՊԱՀՈՒԱԾ Է «Յառաջ»ին, կը խնդրուի թերթին չպատկանող գումարները (նուէրներ, տարբեր թերթերու բաժնեգիններ եւայլն) ղրկել միայն մանտա-քարթով:

Շնորհակալութիւն մեր այն բաժանորդներուն որ կանխիկ եւ կանոնաւոր վճարումներով կը դիւրացնեն վարչութեան գործը:

## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՃԱՄԲԱՐԸ

### ԱՏԼԱՆՏԵԱՆԻ ԱՓԻՆ

Վայրը՝

Olonne-sur-Mer (Vendée)

3 Օգոստոսէն 14 Սեպտեմբեր

Մեկնում՝ Կիրակի, Օգոստոս 4: առաւօտեան ժամը 7ին: Հաւաքուիլ՝ ժամը 6ին.

Point de rassemblement H :

Gare du Maine Départ.

### ՆՈՒԷՐՆԵՐ

Մայլըմեան եւ Մելքոն Պետրոսեան ընտանիքները իրենց կնոջ եւ մօր՝

ԱՏԸԼԻՆ ՄԱՁԼԸՄԵԱՆԻ

մահուան տարելիցին առթիւ, հետեւեալ նուէրները կ'ընեն ողբացեալին յիշատակին՝ Փարիզի Հայոց եկեղեցիին եւ Մոնմորանսիի հանգստեան տան տասը հազարական ֆրանք :

Ստանալ «Յառաջ»էն :

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Յովհաննէս Նիկողոսեան եւ զաւակները (Լիոն), շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց՝ որոնք անձամբ, հեռագրով, նամակով, ծաղկեպսակով, բարենպատակ հաստատութեանց նուիրատուութեամբ ցաւակից եղած են իրենց մօր, զոքանջ մօր, մեծ մօր՝

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՆՈՒԱՐԴ ՄԻՔԱՅԷԼԵԱՆԻ

անակնկալ մահուան առթիւ:





նափիւռը յայտարարեց.— «Օմանի խաղաղասէր ժողովուրդին վրայ յարձակում գործելէ առաջ, Անգլիացիները պէտք է մտածէին եւ լրջօրէն անդրադառնային Խրուշչեւի յայտարարութեանց», որ ջերմօրէն հրթիռներով Անգլիան անապատի վերածելու սպառնալիք մըն էր:

Զայնասփիւռին դիւանագիտական բաժինի խօսնակը Օմանի մէջ կատարուած անգլ. յարձակումը քաղդատեց անցեալ աշնան անգլեւֆրանսական միջամտութեան՝ Եգիպտոսի մէջ եւ քննադատեց Միացեալ Նահանգներու դիրքը՝ Օմանի հարցին նկատմամբ:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՍՈՒՏԱՆԻ մէջ 20 սպաներ, զինուորական ակադեմիայի 27 ուսանողներ եւ բազմաթիւ այլ զինուորականներ ձերբակալուելով դատարան յանձնուեցան: Դաւադրութիւն մը սարքած էին՝ վարչակարգը տապալելու դիտաւորութեամբ:

«ԷՔՍՓՐԷՍ» շաբաթաթերթին վերջին թիւը արգիլուեցաւ Ալժերիոյ համար: Թերթին մէջ Ֆուռնիէ յօդուած մը հրատարակած էր՝ Պու-Զէկզայի մէջ շարթուսկիզբը պատահած կռուին շուրջ: Յօդուածին մէջ կը քննուէր հրամանատարութեան եղանակը: Հակառակ անոր, որ Ալժերիա ղրկուած թերթերուն մէջ յիշեալ յօդուածը յապաւուած էր խմբագրութեան կողմէ՝ իշխանութիւնը հաւաքեց բոլոր թիւերը:

ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ մէջ ձերբակալուած խորհրդային լրտես Ապէլի պարագան մեծ աղմուկ հանեց: Ապէլ Մոսկուայի մէջ ունի տղայ մը եւ ամուսնացած աղջիկ մը: Անակնկալներ կրնան պատահիլ:

ՄՈՒՍՈԼԻՆԻԻ մարմինը, որ կը պահանջուէր ընտանիքին կողմէ, պիտի չվերադարձուի, կը յայտարարեն Հռոմի դիւանագիտական շրջանակները:

ՍՊԱՆԻՈՅ մէջ մասնաւոր յանձնախումբ մը կազմուած է, որ պիտի քննէ օտար լեզուով երկիր մտնող բոլոր հրատարակութիւնները:

ՖՐԱՆՍԱՅԻ եւ Եգիպտոսի ներկայացուցիչները Օգոստոսի վերջը խորհրդակցութիւն մը պիտի ունենան Զուիցերիոյ մէջ, երկու երկիրներուն առեւտրական եւ դիւանագիտական յարաբերութիւնները բարելաւելու համար: Ֆրանսայի դիւանագիտական շրջանակները չհաստատեցին այս լուրը:

ԼԵՀԱԿԱՆ երկու սուզանաւեր նշմարուած են Սկովտիոյ արեւելեան ափերուն վրայ:

ՄՈՍԿՈՒԱՅԻ երիտասարդական փառատօնին առիթով Խ. Միութիւն գացած ամերիկացի գրօսաշրջիկները խստօրէն կը քննադատուին խորհրդային մամուլին մէջ.— «Սեւ ակնոցներով պարոններ ատելավառ նայուածքներ կը նետեն զիրենք շրջապատող զուարթ եւ ժպտերես երիտասարդներուն վրայ»:

ԽՐՈՒՇՉԵՒ եւ Միկոյեան իրենց շրջապտոյտները կը շարունակեն Արեւելեան Գերմանիո. մէջ՝ ծաղիկներով բեռնաւորուած, սակայն ժողովուրդին անտարբերութիւնը ժպիտը խլած է երկուքին ալ դէմքերէն...:

ՃԱՓՈՆ թեկնածու է ՄԱԿի Ապահովութեան Խորհուրդին: 14 երկիրներ՝ մէջը ըլլալով Ամերիկա եւ Անգլիա, համաձայն են, սակայն Խ. Միութիւն, ինը ուրիշ երկիրներու հետ՝ դէմ է Ճարոնի թեկնածութեան:

ՖՐԱՆՍԱՅԻ կեդրոնական շրջանին մէջ, յատկապէս՝ Շամբանյը եւ Մաքոն, անձրեւներն ու փոթորիկը մեծ աւերներ կը գործեն: Այգիները վնասուած են: Գիւղակներ եւ գիւղեր ողողուած են: Փարիզեան շրջանին մէջ ալ անձրեւ ու փոթորիկ կայ:

## «Ո՞ՒՐ ԵՍ, ՄԱՅՐ ԻՄ...»
Գրեց՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Պատկերազարդ եւ շքեղ տպագրութիւն:

Գինը 100 փրանք

(Թղթատարական սակերու փոփոխութեան պատճառաւ, կը պահանջուի 50 ֆրանք՝ փոստով ղրկուելու պարագային: Ուրեմն ղրկել ընդամէնը 150 ֆրանք դրոշմաթուղթ):

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Նիսի եւ շրջանի Կրօն. Ընկերակցութիւնը կը ծանուցանէ թէ «Վերափոխման Ս. Աստուածածնի» տօնին առթիւ հանդիսաւոր պատարագ եւ աւանդական մատաղօրհնութիւն եւ խաղողօրհնէք տեղի պիտի ունենայ Մատըլէնի Հայոց եկեղեցին, 18 Օգոստ. կիրակի օր: Կը պատարագէ տեղւոյս հոգեւոր հովիւ Արժ. Տէր Ատոմ քահանայ:

Սկիզբ ժամերգութեան ժամը 8ին, պատարագ ժամը 10ին:

Մատաղագինի մասնակցողներէ կը խնդրուի իրենց նուէրները յանձնել վարչութեան նշանակած յանձնախումբերուն եւ կամ եկեղեցիի վարչութեան:



Imp. ARAXES, 46, Rue Richer Paris-9e

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

### ՀԱՅ—ԲՈՅԺ
ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

Խմբ. Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Թիւ 187-188 (Յուլիս-Օգոստոս)

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ.— Հայ անասնաբոյժներ (Շ. Նարդունի). — Ի՞նչ խմել ծարաւ ենք (Տոքթ. Ասքանազ). — Հայաստանի բուժավայրերը (Տոքթ. Յակոբեան). — Ծովի լոգանք (Տոքթ. Աչճեան). — Գինի (Բժկ. Բառարան). — Կաթ կը միզէ (Փրոֆ. Վէռհօօկէն). — Ցղութիւնը եօթը ամիս միայն (Տոքթ. Ազատանի). — Ի՞նչպէս տեղափոխել արկածեալը (Խաչուհի). — Ֆրանկախտը (Տոքթ. Միսաքեան). — Ի՞նչ է հանճարը (Վէռհառն). — Ծերութիւն եւ ծերախտ (Տքթ. Նաւասարդ). — Հին բառարաններ (Յ. Քիւրտեան). — Հացի (Իշխանեան):

Բաժանորդագրութեան պայմաններ.— Տարեկան Ֆրանսա 1000 ֆրանք, արտասահման 1200 ֆրանք: Դիմել Նարդունիի, «Յառաջ»ի հասցէով:

### ՊԱՏԱՐԱԳ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

18 Օգոստ. կիրակի առաւօտ Աստուածածնայ տօնին առթիւ Ս. պատարագ պիտի մատուցուի Ռիւ Ժէ, Սէն Լուի սրահին մէջ: Պիտի պատարագէ Պսակ քահանայ՝ Պէյրութէն:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Պօմոնի Կ. Խաչի Վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Եօթնեղբայրեանէ 1000 ֆր. իրենց աղջըկան՝ Օր. Լիւսիի ամուսնութեան առթիւ:

×

Պ. Գրիգոր Պաղտասարեան 2000 ֆր. կը նուիրէ Ֆ. Կ. Խաչի դպրոցին, փոխան ծաղկեպսակի, Մանուկ Արապկեանի կսկծալի մահուան առթիւ:

ԼԱ ՍԻՈԹԱՅԻ Սուրբ Կարապետ եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ Սուրբ Աստուածածնայ տօնին առթիւ, աւանդական մատաղի եւ խաղողի օրհնութիւնն և բաժանումը տեղի պիտի ունենան Օգոստոս 14ի երեկոյեան եւ 15ի առաւօտեան, Ս. պատարագի արարողութենէն վերջ: Կը հրաւիրուի բարեպաշտ ժողովուրդը:

### «ՅԱՌԱՋ»Ի ԲԱՐԳԱՒԱՃՄԱՆ ՀԱՄԱՐ

Շնորհակալութեամբ ստացանք Վալպարէյզէն ընկ. Ա. Աչճեանէ 1000 ֆրանք:

### Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՃԱՄԲԱՐԸ
ԱՏԼԱՆՏԵԱՆԻ ԱՓԻՆ

Վայրը՝

Olonne-sur-Mer (Vendée)

3 Օգոստոսէն 14 Սեպտեմբեր

Անհատապէս մեկնողները կրնան ուղղակի դիմել՝

Camp Nor Séround, La Bauduère à Olonne-sur-Mer (Vendée).

Իջնել Սապլ տ'Օլօնի կայարանը, առնել օթօքարը դէպի Օլօն և իջնել Լա Պօտիւէր:

Միասին տանիլ սաւան եւ ծածկոց:

### ՀԱՅԱՍՏԱՆ ԵՒ ՀԱՅԴԱՏԸ

Հայեւռուս յարաբերութիւններու լոյսին տակ:

Գրեց՝ ԳԱԲՐԻԷԼ ԼԱԶԵԱՆ

Տպարան «Յուսաբեր», Գահիրէ 1957:

Գին՝ 1100 ֆրանք:

Դիմել Յառաջի եւ հայ գրատուններ:

### ՕԳՈՍՏՈՍ 18ԻՆ

Պիտի ձայնասփռուի Փալէ տը Շայեոյի եկեղեցական երաժշտութեան համերգը, որուն մասնակցած է հայկ. երգչախումբը, ղեկավարութեամբ Կարպիս Ափրիկեանի, կիրակի առտու ժամը 8·45ին Փարի – էնթերէն:





թիւնը ձգելով: Կրեմլին, ուրբաթ օր Սիպերիոյ մէջ պայթեցուց հիւլէական իր զօրաւորագոյն ռումբը:

Ապաքինման ժողովին մէջ, անգլիացի պատուիրակը շեշտը դնելով այս կէտին վրայ, Խ. Միութեան ոչ-խաղաղական ըղձացումներուն փաստը նկատեց զայն:

Մոսկուայի ներկայացուցիչը՝ Զորին, անմիջապէս հակադդելով անգլիացի պատուիրակին, շարք մը հարցումներ ըրաւ, աւելի ապահով տեղեկութիւններ ունենալու համար հիւլէական փորձերը երկու տարիով յետաձգելու Արեւմտեան վերջին առաջարկին շուրջ:

Պատասխաններ տուին Ֆրանսայի պատուիրակ Ժիւլ Մոք եւ Միացեալ Նահանգներու ներկայացուցիչ Սթասըն:

Յաջորդ նիստը պիտի գումարուի չորեքշաբթի օր:

× Ուաշինկթընէն, հիւլէական ուժի յանձնախումբը կը հաղորդէ, թէ Սիպերիոյ մէջ ուրբաթ օր «կարեւոր» պայթիւն մը եղած է: Նոյն օրը, Նեվատայի անապատին մէջ, Միացեալ Նահանգներ պայթեցուցած են 1957ի իրենց տասնըերրորդ հիւլէական ռումբը:

## ՌՈՒՍԵՒԳԵՐՄԱՆ ՑՆՑՈՒԿԸ

●

Ինչպէս ծանօթ է, ամիսէ մը ի վեր Մոսկուայի մէջ սկսած են ռուսեւգերման խորհրդակցութիւնները: Ցաճախ ընդհատուեցան անոնք, անհամաձայնութիւններու հետեւանքով: Մոսկուայի գերման պատուիրակութեան առաջնորդը՝ Լար, որ երկրորդ անգամ ըլլալով Պոնն գացած էր, իր կառավարութեան հետ խորհրդակցելու համար, վերադարձած է Խ. Միութիւն:

Ներկայ պայմաններու մէջ դժուար է թէ համաձայնութիւն մը կարելի ըլլայ գոյացնել Խ. Միութեան եւ Արեւմտեան Գերմանիոյ միջեւ: Այս է նաեւ կարծիքը՝ Մոսկուայի Արեւմտեան շրջանակներուն, որոնք ձախողութիւնը կը վերագրեն Կրեմլինի չկամութեան:

Այս ուղղութեամբ յատակ յօդուած մը կայ «Փրաւտա»յի մէջ: Խորհրդայինները բանակցութեանց առանցքը կը նկատեն տնտեսական յարաբերութիւնները՝ երկու երկիրներու միջեւ: Այս մարզին մէջ, Մոսկուա կարեւոր առաջարկներ կ'ընէ Արեւմտեան Գերմանիոյ:

Գալով Պոննի կառավարութեան՝ գըլխաւոր մտահոգութիւնն է Խ. Միութեան մէջ գտնուող Գերմանացիներու հայրենադարձը: Դաշնակցային Հանրապետութեան Արտաքին նախարար Ֆոն Պրենթանոյի համաձայն, եթէ Մոսկուա ընդունի խորհրդակցիլ Գերմանացիներու հայրենադարձին մասին եւ բարի կամեցողութեան տրամադրութիւններ ցոյց տայ՝ ո՛չ մէկ պատճառ կայ, որ Գերմանիա առեւտրական համաձայնութիւններ չկնքէ: Սակայն, այնպէս կը թուի, թէ Խորհրդայինները իրենց տեսակէտէն հրաժարելու միտք չունին:

× Պոննի պաշտօնական շրջանակները կը հաղորդեն թէ 566 նախկին էս-էսներ ընդունուած են գերմանական նոր բանակին մէջ: Ասոնց մէջ կը գտնուին 45 նախկին սպաներ: Յարդ, 4386 նախկին էս-էսներ դիմում կատարած էին գերմանական նոր բանակին մաս կազմելու համար: Դիմումներուն մեծ մասը մերժուած է:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱՄԵՐԻԿԱՑԻ 41 երիտասարդներ երէկ հասան Փէքին, այս ձեւով Միացեալ Նահանգներու Արտաքին նախարարութեան դըրած արգելքը վերջացած է՝ համայնավար Չինաստան այցելողներուն համար: Ամերիկացիները կ'ընկերանան տասներկու այլ ազգերու երիտասարդ ներկայացուցիչներուն, որոնք մասնակցած էին Մոսկուայի երիտասարդական փառատօնին:

ՍԻՆԿԱՓՈՒՐԻ մէջ համայնավարական դաւադրութիւն մը երեւան ելաւ: Երեսունի մօտ քաղաքական դէմքեր ձերբակալուեցան, ոստիկանութեան կողմէ կատարուած խուզարկութեան մը ընթացքին:

ՖՐԱՆՍԱՑԻ Արտաքին նախարար Փինօ, իր պաշտօնակիցներուն ընկերակցութեամբ, շաբաթ առաւօտ հասաւ Րիօ տը Ժանէյրօ: Փինօն դիմաւորելու գացած էին Պրազիլիոյ Արտաքին նախարարն ու ֆրանսական դեսպանը:

ՍԵՈՒԼԻ մէջ, Հարաւ-Քորէական ոստիկանութիւնը երեւան հանած է խորհրդային լրտեսական ցանց մը, որ հինգ տարիէ ի վեր կը գործէր երկրին մէջ, կարեւոր տեղեկութիւններ յանձնելով Մոսկուա:

ՖՐԱՆՍԱՑԻ դրամատան պաշտօնեաները նոր բողոքներ կը ներկայացնեն, անցեալ Յուլիսի ընթացքին իրենց ըրած գործադուլին օրականներ պահանջելով: Հակառակ պարագային, կը սպառնան կրկին գործադուլի դիմել:

ՍԱԿԱՐԱՆ (Օգոստ. 23).— Ձոյլ ոսկի 521.000, նափոլէոն 3800, զուիցերիական 3670, անգլիական 4570, քսան տոլարնոց 18.480, Թղթադրամ (զուգահեռական շուկայ) սթերլին 1150, տոլար 444, զուիցերիական 106,50, լիր 0,70:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Ազգ. Միութիւնը եւ Եկեղեցաշէն Յանձնախումբը հրապարակաւ շնորհակալութիւն կը յայտնէ Պ. Նափոլէոն Պըլըգեանի իր 500.000 ֆրանքի նոր նուէրին համար շինութեան ֆոնտին: Ի մօտոյ աւելիով օգնելու խոստումով: Ասկէ առաջ ոչ թէ միայն 300.000 ֆրանքի նուէրով մը արդէն օգնած էր շինութեան գործին, այլ կը բերէր միշտ իր բարոյական աջակցութիւնը ամէն անգամ որ պէտք ունենանք իրեն, որպէս մեր շրջանին շինութեան ձեռնածուն (անթրըփրընէօր) գնահատուած է հանրօգուտ շինութեան նախարարին ալ կողմէ եւ իբր այդ ներբողուած իր գործը անցեալ տարի փարիզեան թերթի մը մէջ ի քաջալերութիւն քաղաքիս բարեզարդման-համար մատուցած ծառայութեանց համար: Յարդ Պ. Պըլըգեանի ազգանուէր կեցուածքը իրաւունք կուտայ մեզ այլ ակնկալութեանց համապատասխան իր դիրքին, լրացնելու համար օր առաջ ամէնուս սրտին խօսող պատուաբեր եկեղեցին եւ ազգ. տունը, որպէս իրականացումը ազգային երազին:

ԱԶԳ. ՄԻՈՒԹԻՒՆ

×

Վալպարեւ – Լա Փօմ Սէն Մարսէլի Հայ Երիտ. երկսեռ Միութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները, 11 Օգոստ.ի դաշտապնացութեան առթիւ, որ վիճակահանութեան դրուեցան ու գոյացաւ կոկիկ գումար մը.—

Պ. Պ. Ս. Առաքելեան կարկանդակ մը, Մ. Աչճեան երեք շիշ մուսքօ, Հաթապեան մէկ շիշ մուսքօ, Սահակեան մէկ շիշ մուսքօ, Մեսրոպեան մէկ շիշ մուսքօ:

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

### ՀԱՅ—ԲՈՅԺ

ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

խմբ. Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Թիւ 187-188 (Յուլիս–Օգոստոս)

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ.— Հայ անասնաբոյժներ (Շ. Նարդունի). — Ի՞նչ խմել ծարաւ ենք (Տօքթ. Ասքանազ). — Հայաստանի բուժավայրերը (Տօքթ. Յակոբեան). — Ծովի լողանք (Տօքթ. Աչճեան). — Գինի (Բժկ. Բառարան). — Կաթ կը մեղէ (Փրոֆ. Վէռհօօկէն). — Ցղութիւնը եօթը ամիս միայն (Տօքթ. Աղասանի). — Ի՞նչպէս տեղափոխել արկածեալը (Խաչուհի). — Ֆրանկախտը (Տօքթ. Միսաքեան). — Ի՞նչ է հանճարը (Վէռհաւն). — Ծերութիւն եւ ծերախտ (Տքթ. Նաւասարդ). — Հին բառարաններ (Յ. Քիւրտեան). — Հացի (Իշխանեան):

Բաժանորդագրութեան պայմաններ.— Տարեկան Ֆրանսա 1000 ֆրանք, արտասահման 1200 ֆրանք: Դիմել Նարդունիի, «Յառաջ»ի հասցէով:



### ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

«Յառաջ» կը ծախուի նաեւ Քատէի մեթրոյին գլուխի կրպակը:



### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Բժիշկ Գէորգ Սանասարեան, որ մօտ քսան տարի առաջ կը գտնուէր Ֆրանսա: Իր մասին տեղեկութիւն ունեցողներէ կը խնդրուի իմացնել իր եղբօրորդւոյն, հետեւեալ հասցէով.—

M. Soghomon Sanassarian
Arapkir Rue 8, 61 Erévan
U. R. S. S. 'Arménie



## ՀԱՅԱՍՏԱՆ ԵՒ ՀԱՅ ԴԱՏԸ

Հայեւռուս յարաբերութիւններու լոյսին տակ:

Գրեց՝ ԳԱԲՐԻԷԼ ԼԱԶԵԱՆ

Տպարան «Յուսաբեր», Գահիրէ 1957:
Գին՝ 1100 ֆրանք:
Դիմել Յառաջի եւ հայ գրատուններու:



Imp. ARAXES, 46, Rue Richer Paris-9e

